դրացի երկիրը: Թէեւ յետպատերազմեան դաշնագիրներու ամէ-նէն կարեւորն էր այս եւ կը զօրացնէր Վերսայլի դաշնագրին տրա-մադրութիւնները՝ Հռենոսի ապազինեալ շրջանի մասին եւ առ-ժամապէս ապահովութիւն կը ներշնչէր, սակայն երբեք գոհա-ցուցիչ չհամարուեցաւ, քանի որ կացութիւնը անստոյգ էր արե-ւելեան սահմաններու մասին, իսկ ստորագրողները իրենց ուզած եղանակով կը մեկնէին դաշնագիրը:

## Խորհրդակցութիւններ Անգլիոյ մէջ

Անգլիոյ վարչապետն եւ արտաքին նախարարը մասնաւոր ժո-ղով մը գումարեցին ուրբաթ օր: Ժողովէն անմիջապէս վերջը լուր տարածուեցաւ թէ Պ. Իտընի պաշտօն յանձնուած է վերջ-նապէս ստուգել թէ Գերմանիա եւ Իտալիա իսկապէս միտք ու-նի՞ն չեղեալ հռչակելու Լոքառնոյի դաշինքը: Պաշտօնապէս կը հաստատուի որ Պ. Ֆլանտէն հաղորդած է Պ. Իտընի թէ Մուսոլի-նի պիտի հեռանայ Ազգերու Դաշնակցութենէն, չեղեալ պիտի հռչակէ ֆրանքօ-իտալական գաղտնի դաշնագիրը եւ չպիտի ստո-րագրէ նաւային որ եւ է համաձայնութիւն, եթէ նոր պատիժներ տնօրինուին Իտալիոյ դէմ: Մուսոլինի ֆրանսական դեսպանին հետ խօսած ատեն մասնաւորապէս չէ յիշեր Լոքառնոյի դաշինքը, բայց Ֆլանտէն այդ ալ անխուսափելի կը գտնէ: Այս առթիւ, միշտ համաձայն նոյն աղբիւրին, Պ. Ֆլանտէն հաղորդած է Պ. Իտընի թէ Ֆրանսա մասնակի զօրաշարժ պիտի յայտարարէ եւ Մեծն Բրիտանիոյ, ինչպէս եւ Ազգաժողովին գործօն աջակցութեան կը սպասէ, եթէ Գերմանիա փորձէ վերազինել Հռենոսի շրջանը:

Անգլիոյ վարչապետը եւ արտաքին նախարարը որոշեցին չը-պատասխանել Ֆրանսայի աջակցութեան հրաւէրին, մինչեւ որ կացութիւնը պարզուի: Միւս կողմէ, եթէ Անգլիա համոզում գո-յացնէ թէ Հիթլէր կը խորհի բռնի գրաւել Հռենոսի շրջանը, Մու-սոլինիի դրդումով, այն ատեն որոշ ապահովութիւններ պիտի ընծայէ Ֆրանսայի:

## Ի՞նչ պիտի պատասխանէ Մուսոլինի

Իտալիոյ նախարարական խորհուրդը գումարուեցաւ երէկ, շաբաթ, առտուան ժամը 10ին, խորհրդակցելու համար Ազգաժո-ղովին տրուելիք պատասխանի մասին: Մինչեւ վերջին պահուն այնքան գաղտնապահութիւն կը տիրէր որ, նոյն իսկ Մուսոլինիի անմիջական գործակիցները լուր չունէին պատասխանի էութեան մասին: Ընդհանուր կարծիքը այն էր թէ Մուսոլինի պիտի ըն-դունի բանակցիլ, դնելով բացորոշ վերապահումներ, որոնք հա-մազօր են մերժումի: Ամէն պարագայի մէջ, Մուսոլինի չուզեր իբ-րեւ միջնորդ ընդունիլ Ազգերու Դաշնակցութիւնը, ինչպէս կը հե-տեւի թերթերու հրատարակութիւններէն: Իտալական մամուլը լռութիւն կը պահէր մինչեւ հիմա, բայց առջի օր «Թրիպունա» վերապահութիւնը խզելով գրեց թէ անընդունելի է բանակցիլ «Ազգերու Դաշնակցութեան շրջանակին մէջ եւ անոր ուխտին տրամադրութեամբ»: Նէկիւսը դիմադրելու մղելով եւ պատիժ-ներ տնօրինելով Իտալիոյ դէմ, Ազգերու Դաշնակցութիւնը կոր-սնցուց միջնորդի իրաւունքը, կ'ըսէ իտալական թերթը: Ուրեմն, գլխաւոր դժուարութիւնը այն է որ Իտալիա կ'ուզէ Նէկիւսին հետ բանակցիլ իբրեւ յաղթական պարտեալ, իսկ Ազգերու Դաշնակ-ցութիւնը հաւասար կը բռնէ երկու կողմերը:

## Մահափորձ Եուկոսլավիոյ Երեսփ. ժողովին մէջ

### ԵՐԵՍՓՈԽԱՆ ՄԸ ԿԸ ԿՐԱԿԷ ՎԱՐՉԱՊԵՏԻՆ ԴԷՄ

Ուրբաթ առտու ժամը 11ին, երբ Եուկոսլավիոյ երեսփ. ժո-ղովը նիստ գումարած էր վարչապետին զեկոյցը լսելու համար, ընդդիմադիր երեսփոխան Արնավուտովիչ ատրճանակի երկու հարուած պարպեց վարչապետ Պ. Ստոյատինովիչի դէմ, բայց նպատակին չհասաւ: Վարչապետը ամպիոն բարձրանալով, սկսած էր կարդալ իր զեկուցումը արտաքին քաղաքականութեան մասին: Երեսփոխան Արնավուտովիչ նըրբանցքներուն մէջ կեցած, շարու-նակ կ'ընդմիջէր: Վարչապետը հրամայեց ժողովարահ մտնել: Երեսփոխանը հնազանդեցաւ եւ գնաց նստաւ առաջին շարքի նըս-տարաններուն վրայ, շարունակելով անդադար ընդմիջել: Յան-կարծ մեծամասնութեան պատկանող երեսփոխան մը դիտել տը-ուաւ թէ Արնավուտովիչ զինով է եւ պահանջեց դուրս հանել: Ա-սոր վրայ Արնավուտովիչ ատրճանակը քաշելով, երկու անգամ կրակ ըրաւ: Վարչապետը բեմին մէջ պաշտպանուած ըլլալով, չզարնուեցաւ եւ երկու գնդակները գացին տեղաւորուեցան դիւա-նագիտական օթեակի ցանկապատին մէջ: Երեսփոխանները խոյա-ցան Արնավուտովիչի վրայ, որ երկու գնդակ եւս արձակեց, բայց մարդ չվնասուեցաւ: Յետոյ կաշկանդուելով ձերբակալուեցաւ եւ նիստը դադրեցաւ պահելի ժխորի մը մէջ: Երկու երեսփոխաններ, որոնք զինաթափ ըրած էին յարձակողը, վիրաւորուեցան թեթե-ւապէս, բայց ոչ գնդակներէն: Կարճ դադարէ մը վերջ, նիստը վերսկսաւ եւ բոլոր կուսակցութեանց, նոյնիսկ ընդդիմադիրնե-րուն ներկայացուցիչները խնդակցութիւն յայտնեցին վարչապե-տին ազատման համար: Ժողովը հանութեամբ լսեց բոլոր ատե-նախօսները, մէջն ըլլալով ընդդիմադիրներու ներկայացուցիչը, բայց մերժեց խօսք տալ Եէվթիչի խմբակցութեան, որուն կը պատկանի յարձակողը:

Յետոյ վարչապետը շարունակեց իր զեկուցումը բուռն ծա-փերու մէջ, մանրամասն տեղեկութիւններ հաղորդելով արտաքին քաղաքականութեան մասին: Երբ կարգը Իտալիոյ եկաւ, յայտա-րարեց.— «Կը ջանանք անհետացնել անցեալի թիւրիմացութիւն-ները, տեւական բարեկամութիւն մը հաստատելու համար ապա-գային»: Պուլկարիոյ մասին շեշտեց թէ պիտի շարունակուի մեր-ձեցման քաղաքականութիւնը, իսկ Աւստրիոյ համար ըսաւ թէ Հապսպուրկեան գերդաստանին վերահաստատումը կրնայ ծանր բարդութիւններ յառաջ բերել Եւրոպայի խաղաղութեան համար:





















## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Ֆր. Կ. ԽԱՉԻ ՄԱՐՍԷՅԼԻ մասնա-ճիւղի ընդհ. ժողովը, կիրակի, Մարտ 8ին, կէս օրէ վերջ ժամը 4ին, իր դարմանատան մէջ: Կարեւոր օրա-կարգ: Ժողովէն յետոյ ընկերուհի-ները պիտի հիւրասիրուին թէյով եւ խմորեղէնով:

















**Le Gérant: H. STEPHAN**

**Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Damesme, PARIS (13)**

անպաշտպան ձգել իր երկրին չական մէկ մասը։ Գերմանիա երբեք պիտի չը հրաժարի ապահովութեան հաւասար իրաւունքներէ։ Ամրութեանց գիծերը պիտի ծառայեն միայն արեւմտեան սահմանագլուխին պաշտպանութեան։ Այսպիսի ամրութիւնները չեն կրնար չինուիլ մէկ օրէն։ Տարիներ պէտք են։ Ֆրանսացիները չինել սկսան 1927ին եւ դեռ կը շարունակեն։ Մնաց որ, գերմանական ամրութիւնները երբեք չպիտի հասնին այն աստիճանին ուր հասած են ֆրանսականները։ Ֆրանսացիները արդէն իսկ ծախսած են աւելի քան ութ միլիառ փրանք։ Գերմանիա չի կրնար այդքան յառաջ երթալ։ Գերմանական ապագայ ամրութիւններով ալ, որ պիտի սահմանափակուին համաձայն տրամադրելի դրամին, Ֆրանսա մեծ առաւելութիւններ պիտի վայելէ ապահովութեան տեսակէտով»։

Խմբագրականը յետոյ մանրամասնօրէն կը նկարագրէ ֆրանսական ամրութիւնները ամբողջ սահմանին երկայնքը․«Ֆրանսական հրետանիին մէկ մասը կը գտնուի այնպիսի դիրքի մը վրայ ուրկէ կրնայ կրակի տակ առնել գերմանական երկաթուղիները, փողոցները եւ հրապարակները»։

Ուրիշ գերմանական թերթեր ալ խօսելով այս եւ ուրիշ հարցերու մասին, կը չեշտեն թէ Գերմանիա չի կրնար տեղի տալ անարդար պահանջներու առջեւ։

## Կարելի՞ է պատժներ տնօրինել

Սթէֆան Լօզան, «Մաթէն»ի խմբագրապետը, որ այժմ Լոնտոն կը գտնուի, թղթակցութեան մը մէջ քննելով պատժական տնօրինութեանց խնդիրը, կը գրէ․— Ելմտական պատիժնե՞ր։ Լոնտոնի սեղանաւորական կեդրոնը, որ Գերմանիոյ մեծ պահանջատէրն է եւ որ դեռ անցեալ տարի 200 միլիոն անգլ․ ոսկի վարկ բացաւ Գերմանիոյ, անսահմ խորշումով կը մօտենայ այդ հարցին։ Իրականին մէջ, ելմտական – սեղանաւորական պատիժները օգուտ չպիտի ունենան Գերմանիոյ դէմ, որուն ոչ ոք փափաք ունի դրամ փոխ տալու, ընդհակառակն անոնք պիտի ծառայեն Գերմանիոյ, խուսափելու համար իր վճարումներէն։ Տնտեսական պատիժնե՞ր։ Մասնագէտներու կէսը դիտել կու տայ թէ անոնք մահացու հարուած մը պիտի իջեցնեն Գերմանիոյ տնտեսութեան որ չափազանց հիւանդ է արդէն։ Միւս կէսն ալ կը յիշեցնէ թէ տնտեսական պատիժները յաճախ նոյնքան վնաս կը պատճառեն գործադրողներուն որքան կրողներուն, ինչպէս կը հաստատեն բազմաթիւ Ֆրանսացի գործարանատէրներ եւ առեւտրականներ ալ, Իտալիոյ դէմ կատարուած փորձով։ Եւ յետոյ, կարելի՞ է վստահիլ թէ այդպիսի տնօրինութեանց պիտի միանան Հիւսիսային եւ Կեդր․ Եւրոպայի պետութիւնները, որոնք տնտեսապէս հարկատու են Գերմանիոյ։ Զինուորական պատիժնե՞ր։ Մարդիկ չատ երկչոտութեամբ կը խօսին այդ մասին, որովհետեւ անոնք խորշանք կը պատճառեն բոլորին եւ ամէնքն ալ գիտեն թէ ինչ կը նշանակեն։ Եւ յետոյ, Անգլիա, եթէ նոյնիսկ հաւանի, ի վիճակի՞ է արդիւնաւորապէս աջակցելու։ Իր նաւատորմը հինցած է, բանակը՝ սաղմնային, օդագնացութիւնը՝ երկրորդական։

Այս առթիւ թերթը հաւանական կը գտնէ որ նոր եւ աւելի լայն Լոքառնօ մը կազմուի առանց Գերմանիոյ, եթէ ան չհամակերպի որ եւ է ճնշումի։ Բայց առ այժմ ֆրանսական պատուիրակութիւնը կառչած է հին Լոքառնոյի դաշինքին եւ Ազգաժողովի ուխտին։

## Աշխատաւորականները կակառակ են պատերազմի

«Տէյլի Հէրըլտ», Անգլիոյ աշխատաւորական կուսակցութեան օրկանը, բացարձակապէս մերժելով «կանխարգել պատերազմ»ի դիմելու գաղափարը, կը չեշտէ․

— «Եթէ մենք պատերազմի մտնենք Հռենոսի հարցին առթիւ, պիտի ամբաստանուինք իբրեւ կանխամտածութեամբ Գերմանիոյ վրայ յարձակող եւ կանխամտածօրէն մարդ սպաննող, որովհետեւ գերմանական զօրքը գերմանական քաղաքներու մէջ է որ տեղաւորուած է։ Ոչ ոք կրնայ այդպիսի գործողութիւն մը ջատագովել պայծառ խղճմտանքով։ Մնաց որ, ինչի՞ պիտի յանգի այդպիսի պատերազմ մը, ենթադրելով թէ մենք յաղթած ըլլանք։ Վախճանը պիտի ըլլայ նորէն «պարտադրուած խաղաղութիւն» մը։ «Անգլիոյ ժողովուրդին խաղաղասիրութեան կամքը ուժգնօրէն կ՚ընդդիմանայ «կանխարգել պատերազմ»ի մը։ Մենք կը յայտարարենք, իբրեւ արտայայտիչը բրիտանական ժողովուրդին, թէ խնդիրը պատերազմով լուծելու գաղափարն իսկ վճռապէս մէկդի պէտք է դնել»։

## ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

*ԻՏԱԼԱԿԱՆ ԲԱՆԱԿԸ* վերսկսաւ իր գործունէութիւնը, թէ հիւսիսէն եւ թէ հարաւէն, մէկ շաբաթ հանգիստ ընելէ յետոյ։ Հիւսիսի բանակը յառաջ կը խաղայ դէպի Քօրամ, ուր Նէկիւսը զինուորական համախմբումներ կը կատարէ։ Արդէն գրաւած են կարեւոր դիրք մը։ Իսկ հարաւէն Զօր․ Կրացիանի կը պատրաստուի բուռն յարձակողական մը, դէպի Հարրար։ Եթէ յաջողի, ճամբան բացուած պիտի ըլլայ մինչեւ Ատտիս - Ապէպա։ Իտալական օդանաւերը կը շարունակեն ռումբ տեղալ։

*ԹՈՒՐՔԻՈՅ ԵՒ Խ․ ՄԻՈՒԹԵԱՆ* յարաբերութեանց մասին խօսելով, «Ժուռնալ» դիտել կու տայ թէ փրանքօ-խորհրդային դաշինքը «խորտուբորտ» կարգադրութիւն մըն է եւ թէ Ֆրանսա պէտք է զօրաւոր կառավարութիւն մը ունենայ, Սովետներուն ծուղակը չիյնալու համար։ «Թուրքիոյ մէջ բոլշեւիկ խռովարարները կը կալուին առանց այլեւ այլի, առոր շնորհիւ Թուրքիա կը յաջողի յարմարիլ խորհրդային իշխանութեան հետ։ Ի հարկէ կառավարը շատ չի յարմարիր ֆրանսական խառնուածքին, բայց թերեւս կան ուրիշ ազդու միջոցներ, փակելու համար ճամբան յեղափոխական քարոզութեան»։

*ԹԱՌՏԻԷՕ*, նախկին վարչապետը, ձեռնարկած է գիրք մը տպելու, ուր կը պարզէ իր տեսութիւնները, խորհրդարանական դրութեան սնանկութեան մասին։ Առաջին մասը հրատարակուեցաւ «Կռէնկուար» շաբաթաթերթին մէջ։ Այս առթիւ ձախակողմեան թերթերը դիտել կու տան թէ նախկին վարչապետ կ՚ուզէ փաշական կարգ ու սարք հաստատել Ֆրանսայի մէջ։

*ՆՈՐ ԽՌՈՎՈՒԹԻՒՆՆԵՐ* ծագեցան Սպանիոյ մէջ։ Յեղափոխականները կրակի տուին երկու եկեղեցիներ եւ թերթի մը խմբագրատունը եւ բռնի գրաւեցին զինավաճառի մը խանութը։

*ՔՍԱՆ ՖՐԱՆՔՆՈՑ* կեղծ դրամներ (ֆրանսական) շինուած եւ շրջաբերութեան հանուած են Լիլի, Փարիզի եւ Լոնտոնի մէջ։ Դրամանենգներուն կեդրոնը Պրիւքսէլ կը գտնուի։ Ձերբակալուեցան չորս մեղսակիցներ։

*ԱԼՊԱՆԻՈՅ* կարգ մը նահանգներուն մէջ զէնքի տակ առնուած են մինչեւ 40 տարեկան զինուորները, եւ զօրք ղրկուած է Եուկոսլավիոյ սահմանագլուխը, կ՚ըսեն յունական թերթեր։ Վերապահութեամբ կը հրատարակենք այս լուրը։

*ՀՌԵՆՈՍԻ ԳԵՐՄԱՆԱԿԱՆ* զօրքը 248,000 կը հաշուէ *Տէյլի Թէլէկրաֆ*ի քաղաքական խմբագիրը, չարելով մանրամասնութիւններն ալ։

*ԾԵՐԱԿՈՅՏԸ* ուրբաթ օր քուէարկեց զինուորական օրինագիծ մը, որուն համաձայն 1936ին Ֆրանսայի նորագիրներու թիւը պիտի ըլլայ 280,000, փոխանակ 145,000ի, երկարաձգելով զինուորութեան շրջանը։ Այս առթիւ ծախք կը նախատեսուի 222 միլիոն փրանք։

*ԵՐԵՍՓ․ ԺՈՂՈՎԻ* զինուորական յանձնաժողովը արեւելեան ճակատ մեկնեցաւ, ամրութիւնները քննելու համար։

*ՊԱՐՏԱԽՈՐԻԶ ԶԻՆՈՒՈՐՈՒԹԵԱՆ* վերահաստատման տարելիցին առթիւ, մեծ զօրահանդէս մը պիտի կատարուի Գերմանիոյ մէջ, մարտ 16ին։




**Le Gérant: H. STEPHAN**

**Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Damesme, PARIS (13)**

